ՏԵՂԵԿԱԳԻՐ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ
ИЗВЕСТИЯ АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР

Հասարակական գիտություններ 1947 № 8 *Общественные науки*

Ս. ԵՐԵՄՅԱՆ

# ԼԻՊԱՐԻՏ ԶՈՐԱՎԱՐԻ ՀԱՋՈՐԴՆԵՐԸ ԵՎ ԴԱՆԻՇՄԱՆՅԱՆ ՏՈՀՄԻ ԾԱԳՄԱՆ ԽՆԴԻՐԸ

*Ներկա ուսումնասիրությունը շարունակությունն է հանդիսանում «Լիպարիտ զորավարը և նրա նախորդները» աշխատության,[1] ուստի այստեղ կանգ չենք առնի այն խնդրի վրա, թե ովքեր էին Լիպարիտյանները և հատկապես Իվանե Լիպարիտյանը։ Այս հարցերով հետաքրքրվողները կարող են ծանոթանալ հիշյալ աշխատությանը։*

*Մեծ Լիպարիտի գերությունից հետո, 1058 թ.,[2] նրա որդիներից մեկը Իվանեն, գնում է Կոստանդնուպոլիս, որտեղ նոր էր գահ բարձրացել Իսահակ Կոմնենոս կայսրը (1057—1059), որը նրան առնում է իր հովանավորության ներքո և մի շարք կալվածներ է պարգևում բուն Հայաստանում։ Բյուզանդացիները, Արիստակես Լաստիվերտցու վկայությամբ, Իվանե Լիպարիտյանին «տուեալ էին ի պարգևի՝ տեղիս բնակութեան զմեծ աւանն Երիզայ ի գաւառին Հաշտենից, և որ շուրջ զնովաւ դաստակերտքն»։[3] Նույնը հաղորդում է բյուզանդացի ժամանակագիր Ատտալիատեսը։[4] Միայն վերջինս Հաշտենից գավառի Երիզան շփոթում է Եկեղյաց գավառի Երիզայի հետ, որ իր ժամանակ կոչվում էր Երզնկա, ուստի հաղորդում է, թե բյուզանդացիներն Իվանեին իշխան հաստատեցին Եփրատի վրա գտնվող Երզնկայում։[5] Նույն 1058 թվին, երբ Իվանեն ստացավ այս կալվածները, նա նվիրատվություն է բերում մի վանքի։[6]*

*Իվանե Լիպարիտյանը, սակայն, սրանով չի բավարարվում։ Իսահակ Կոմնենոսի գահընկեցությունից հետո, օգտվելով կայսրության մեջ ծագած գահակալական կռիվներից, երբ լսում է, որ բյուզանդական «թագաւորութիւնն յերկուս բաժանեալ է, գնաց և խարանօք էառ զամուրն Եղանց բերդ կոչեցեալ, և արարեալ զայն ընդ իւրով ձեռամբ՝ դառնայ անդրէն ի գաւառն Ազորի, և յամուրն որ կոչի Հաւաճիչ. և բարեկամարար ել քաղաքն ընդ առաջ նորա»։ Այնուհետև Իվանեն փորձում է տիրանալ «ամուր քաղաքին Կարնոյ»։ Սկզբում նա փորձում է խաբեությամբ վերցնել քաղաքը, «ասելով թէ ի թագաւորէն հրաման ունիմ, իմ է քաղաքդ. բացէք զդրունս զի մտից»։ Սակայն քաղաքացիներն ուշադրություն չեն դարձնում, ուստի Իվանեն «մարտ եդեալ, պատերազմաւ կամէր տիրել քաղաքին»։[7] Երբ գրու-*

[1] Տե՛ս Ն. Մառի անվան կաբինետի աշխատություններ, № 2, Երևան, 1947 թ., էջ 103—149։

[2] Անդ, էջ 142—143։

[3] Արիստակէս Լաստիվերտցի—Պատմութիւն, գլ. ԺԸ, Թիֆլիս, 1912, էջ 133։

[4] Տե՛ս Արշակ Ալպոյաճյան, Պատմություն հայ Կեսարիո, հատ. Ա, Կահիրե, 1937, էջ 437։ Տես նաև Վ. Տոմաշեկ—Սասուն և Տիգրիսի աղբերաց սահմանները, Վիեննա, 1896, էջ 41։

[5] Արշակ Ալպոյաճյան, անդ, էջ 485։

[6] Е. Такайшвили, Зап. Вост. Отд. Русск. Арх. Об-ва. 1896, 59.

[7] Ա. Լաստիվերտցի, էջ 123—124։

Թյունը սպանելուց դարձավ՝ Կարինի կառավարիչը գիժեց Անիի կատապանին, որը «ունէր զպատիւ մագիստրոսութեան», որ, անշուշտ, «մագիստրոս և Առևելից կատապան Իսաջրատ»[1] Վխկացին է։ Վերջինս շտապում է զորք ուղարկել Իվանեի դեմ։ Երբ Իվանեն տեղեկացավ, որ իր դեմ զորք է ուղարկված, «ապստամբեաց ևս զերկիրն և դարձաւ ի տեղի իւր»։ Մինախնդիր իշխանը սրանով չբավարարվելով, դիմում է սելջուկներին, որպեսզի նրանք տան «զօրս յօգնականութիւն իւր»։ Պատմագրի ասելով, «այս եղև սկիզբն անհնարին չարեացս, որ անց ընդ մեզ»։[2] Այդպիսով, Տոմաշեկի խոսքերով ասած, «Իվանե վստահելի տեղ չքլլալով՝ քիչ ժամանակ հառաջ թոթափած էր յուր վրայեն հպատակութեան (vassal) լուծը և միարանած էր հեժա Տաճկաց հետ, որոնց ավարառու խմբերուն գլուխն անցած՝ Օխթիս և Ճանեթ առաջնորդեցց»։ Այս դեպքը նախորդեց սելջուկների հերթական արշավանքին։ Իվանեն, իբրև կայսրության դեմ ապստամբող, ուրախությամբ էր միանում սելջուկներին, սակայն, երբ տեսավ բարբարոս ավերիչների բազմությունը, «զղջացաւ և ամեալ ի մեծ ամուրն, ամրանայր»։ Սելջուկները տեսնելով Իվանեին սարսափահար, երաշխավորություն են տալիս և, պատմագրի ասելով, միայն դիմում են նրան հետևյալ պահանջով՝ «Մեզ ճանապարհ ցույց տուր, զմեզ դատարկ մի դարձուցաներ»։ Իվանեն «անճարեալ, տայ նոցա առաջնորդ յուրայնոցն»։[3] Ըստ երևույթին, այս առաջնորդը իր որդիներից մեկն էր, որը Թուրք սելջուկ ասպատակողներին հասցնում է մինչև Թադրիք ու Ճանեթ, մինչև Արևմտյան Վրաստանի սահմանները, «եւ արարեալ անչափ առ և գերի, դարձան մեծաւ յաղթութեամբ»,[4] «իսկ իւրեանց առաջնորդին «մեծատուր պարգեւօք շնորհակալիս մատուցին», «վասն ճանապարհի յաջողութեանն որ պատահեաց նոցա»։[5]

Նույն 1058 թվին սելջուկները,[7] Աբու-Դինար ամիրայի գլխավորությամբ, ձեռնարկեցին մի նոր արշավանք, այս անգամ հարուստ և փարթամ Մելիտինե քաղաքի վրա։ Մատթեոս Ուռհայեցու տեղեկության համաձայն, «եղև առաջնորդ զօրացն անօրինաց որդին Լիպարտին միաբանեալ ընդ նոսա»։

Արդ, հարց է ծագում, թե ով կարող էր լինել «որդին Լիպարտին»։ Մենք տեսանք, որ Լիպարիտ Լիպարիտյանն իր հիշատակարաններից մեկում հիշում է իր երեք որդիներին՝ Ռատ, Իվանե և Նիանիա։ Վերջին երկուսը հիշվում են վրաց և հայ աղբյուրներում, բայց Ռատի մասին ոչ մի տեղեկություն չունենք, իսկ սա պետք է լիներ Լիպարիտի ավագ որդին։ Հիշենք Լիպարիտի գերությունից ազատագրվելու պարագաները։ Հայ պատմագիրները մեզ հաղորդում են, թե Լիպարիտը սելջուկների մոտ, գերության մեջ, այնքան մեծ հեղինակություն էր վայելում, որ Տողրուլ-բեկը

---

[1] Տե՛ս В. Н. Бенешевич, Трманинские надписи XI века из эпохи византийского владычества (Анийская серия VII), Петербург, 1921, 21—28.

[2] Ա. Լաստիվերտցի, գլ. ԺԸ, էջ 124.

[3] Վ. Տոմաշեկ, էջ 41.

[4] Ա. Լաստիվերտցի, էջ 125.

[5] Անդ.

[6] Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 136.

նույնիսկ առաջարկում էր նրան ընդունել մահմեդականություն և մնալ նրանց մոտ ծառայության մեջ։ Սակայն Լիպարիտի կյանքի վախճանը և նրա առանձին հետաքրքրությունը դավանաբանական խնդիրների հանդեպ՝ ցույց են տալիս, որ նա այն մարդկանցից չէր, որ կարողանար այդքան հեշտությամբ կրոնափոխ լինել և ծառայել մահմեդականներին։ Նա միայն օգտագործեց սելջուկ սուլթանի բարյացակամ վերաբերմունքը և բարեկամությունը՝ Վրաստանում իր դիրքերն ամրապնդելու համար։ Միևնույն ժամանակ, հազիվ թե սելջուկ սուլթանը բաց թողներ Լիպարիտին միայն փրկանքի գնով, նա պետք է երաշխիք ունենար, որ այս անվանի զորավարը, ազատագրվելով, չի գա իրեն դեմ պատերազմելու։ Չէ՞ որ 1048 թվի բյուզանդական դիմադրությունը փաստորեն ղեկավարում էր Լիպարիտը։ Այս դիտողությունները ենթադրել են տալիս, որ Լիպարիտը ազատվեց գերությունից ոչ միայն փրկանքով, ինչպես հաղորդում է Կեդրենոսը, այլև պատանդ տալով իր ավագ որդուն՝ Թատին։ Ըստ իս՝ պարզվում է, որ սելջուկ ամիրա Աբու-Դինարի առաջնորդը պիտի լիներ «որդին Լիպարտին» Թատը։ Վերջինս, ապրելով սելջուկների մոտ, անշուշտ, մահմեդականություն էր ընդունել և մտել սելջուկների ծառայության մեջ։ Մի շատ սովորական երևույթ այն ժամանակվա համար։

Սելջուկների այս արշավանքը վերջացավ նրանց լիակատար պարտությամբ։ Նրանք ավարով ու գերիներով բեռնված՝ Արածանիի հովտով վերադառնում էին Իրան, Տարոնի սահմաններում՝ սուրբ Կարապետի վանքի մոտ, նրանց ճանապարհը կտրեցին քաջ սասունցիները, որոնց գլխավորում էր Մամիկոնյան իշխանը՝ «զօրաւորն և քաջ որդին Մուշեղայ Թոռնիկ» (մահացած 1071 թ.)։ [1] Հանկարծակիի եկած սելջուկները կորցնում են ամբողջ ավարն ու գերիները և, ցրտահար լինելով, կենդանի մնացածները փախչում են Մազապուրծ։ [2]

Տոմաշեկը, անդրադառնալով այս արշավանքին, հակառակ Մատթեոս Ուռհայեցու տեղեկությանը, որ դեպի Մելիտինե արշավող Աբու-Դինարի առաջնորդը Լիպարիտի որդին էր, շփոթում է նախորդ արշավանքի (դեպի Խաղտիք և Տանեթ) առաջնորդի հետ, որ, ըստ Լաստիվերցու, էր «յիւրայնոցն» Իվանեի, և գտնում է, թե, «Իվանեի որդիներեն մինը Աբու-Դինարի զորաց առաջնորդն ըլլալով՝ Մելիտինեի վրա քալեց»։ Ինչպես տեսանք, Աբու-Դինարի առաջնորդն էր Լիպարիտի մյուս որդին՝ Թատը, իսկ Իվանեի որդին էր, ըստ երևույթին, նախորդ արշավանքի առաջնորդը։

Մեր ժամանակի բանասերներից մեկը՝ Գոմմագենացին, խոսելով Սեբաստիայում հաստատված Դանիշմանյան տոհմի ծագման խնդրի մասին, հիմնվելով Տոմաշեկի այս սխալ փաստի վրա, հարց է առաջադրում. «արդյոք Խանէի (կարդա Իվանեի) այս անանուն որդին նույն ինքն Դանիշմանը չէր, որովհետև թե հոր և թե որդվույն նկարագիրներուն և գործերուն համար ըսվածները և թե թվականը քաջապես կը համաձայնին

[1] Մատթէոս Ուռհայեցի, էջ 130։
[2] Տոմաշեկ, էջ 41—42։
[3] Անդ, էջ 41։

թուրքական աղբյուրներու և Միխայել Ասորւո տվյալներուն հետ»:[1] Պրոֆ. Արշակ Ալպոյաճյանը ևս Կոմմագենացու հետ (տես «Փիլարտոս Հայր», հավելված Է-Ը) համաձայնելով, ասում է, թե տրամադիր է Դանիշմանյանների տոհմի հիմնադիրը «ենկատելու կրոնափոխ հայ մը կամ վրացի մը»:

Որո՞նք են այն տվյալները, որ հիշյալ հեղինակներին բերում են այս կարծիքին: Մեզ հասած աղբյուրների համաձայն, Դանիշմանյան տոհմի նախահայրն է եղել Ահմեդ-Դայլու, ծագումով հայ կամ թուրքմեն, և, ինչպես ցույց է տալիս անունը, եղել է վարժապետ (danišmand), հմուտ արաբերենի և պարսկերենի: Ըստ Կոմմագենացու բերած փաստերի («Փիլարտոս Հայր», էջ 22), 1050 թ. Աբբասյան էլ-Կայիմ խալիֆից (1031—1075) Ահմեդ-Դայլին թույլտվություն էր ստացել Ռումի (բյուզանդական) երկրներում «սրբազան պատերազմ» մղելու և իր նվաճած երկրների իշխանությունը իրեն սեփականելու: Ենթադրում են, որ Ալփ-Արսլան սուլտանը բարյացակամ է վերաբերվել իր հեջուբին (սենեկապետին)՝ խալիֆի կողմից տրված իրավունքը վավերացրել է:

Միքայել Ասորին հաղորդում է, որ Ալփ-Արսլանի ժամանակ, երբ նրա զորավար Սուլեյմանը պաշարում էր Անտիոքը, «Ամիրայ մի անունն Դանշման, եկեալ ի Թուրքաց եւ եկն եմուտ յերկիրն Կապադովկիացւոց և առ զՍեբաստ և զԿեսարիայ և իշխանացաւ ի վերայ երկրին: Եւ այս է սկիզբն Դանշմանայ»:[3] Իսկ Մատթեոս Ուռհայեցին բացորոշ վկայում է, որ նա ծագումով հայ է եղել: «Յայսմ ամի [1084 թ.], — ասում է նա, — մեռաւ Դանիշմանն մեծ ամիրայն Հոռոմոց աշխարհին, որ լեալ էր յազգէն Հայոց. այր բարի և շինող աշխարհի և էր յոյժ ողորմած ի վերայ հաւատացելոցն Քրիստոսի. եւ եղև սուգ մեծ ի վերայ հաւատացելոցն, որք էին ընդ ձեռամբ նորայ»:[4] Նույնն ասում է նաև Վարդան պատմիչը:

Ուրեմն, հետևելով Կոմմագենացու և Արշակ Ալպոյաճյանի ենթադրությանը և մեր ձեռքի տակ եղած փաստերին, պետք է ենթադրել, որ Լիպարիտի որդի Ռատը, որը 1051 թվին պատանդ էր թողնված սուլտանի մոտ, կրոնափոխ է լինում և դառնում նրա պալատի հեջուբներից (սենեկապետներից) մեկը, իբրև նրա որդիների դաստիարակ՝ վարժապետ, այսինքն «Դանիշմանդ»: Հետագայում այս «Դանիշմանդ»-Ռատը մասնակցում է սելջուկների արշավանքներին և Սուլեյմանի նման դառնում է մեծ զորավարներից մեկը: Ալփ-Արսլան սուլտանը 1071 թվին Դանիշմանդ-Ռատին է վերապահում նվաճել Փոքր Հայքը, այն է՝ Երզնկայից մինչև Ալիս գետը տարածվող երկիրը, որը և դառնում է նրա տոհմի՝ Դանիշմանյանների ժառանգական սեփականությունը, իսկ Նիկսիար (Նոր Կեսարիա) քաղաքը՝ նրանց կենտրոնը: Կոմմագենացին իր ենթադրությունը, որ Դանիշմանյան տոհմի հիմնադիրն էր Իվանեի մահմեդականացած որդին (իսկ ըստ մեր տվյալների՝ Իվանեի եղբայր Ռատը), հավանական է դարձնում նաև հետևյալ

[1] Կոմմագենացի, Փիլարտոս Հայր, Հալէպ, 1930 (հավելված, էջ Ժ): Դժբախտաբար այս վերջին աշխատանքի կարևոր աշխատությունը մեր ձեռքի տակ չունենք, ուստի ցիտում ենք ըստ Արշակ Ալպոյաճյանի աշխատության. «Պատմություն Հայ Կեսարիո» հատ. Ա. Գահիրե, 1937, էջ 486:

[2] Անդ, էջ 485:

[3] Միքայել Ասորի, էջ 399:

[4] Մատթէոս Ուռհայեցի, էջ 227:

նկատառումներով. «Անշուշտ նշանակության արժանի է, — գրում է նա, — Դանիշմանդի և հաջորդներուն դրամներու վրայի նշանագրերուն երկար ատեն հունատառ ըլլալու պարագան, ինչ որ ամենազորավոր փաստ մը կրնայ համարվիլ անոնց քրիստոնեական ծագում ունենալու վարկածին։ Դանիշմանդներու մեկ կողմեն պարսկական և մյուս կողմեն հունական հակումներ ունենալը ավելի վրացական նկարագրի մը պատշաճ կը համարվի քան հայկականի»։[1] «Ինչ որ ալ ըլլա իր ծագումը, — ասում է Արշակ Ալպոյաճյանը, — Թուրքման, Հայ կամ Վրացի, համենայն դեպս Անձեռ Տայլու, պետք է անվարան հաստատարենք թե հարկադրանքի տակ թերևս խալամացող, իր նախկին հավատակիցներուն նկատմամբ բարյացակամ եղած է, թերևս համոզյալ մը չըլլալուն համար»։[2]

Մեզ հասել է նաև մի վկայություն, որը ուշադրության չի արժանացել նախորդ երկու բանասերների կողմից. չնայած որ այդ փաստերից օգտվում են այլ կապակցությամբ։ Խոսքս Գոհարինյանց նահատակների վկայաբանության մասին է։ Մեր Հայսմավուրքները Հայոց 524 թվականի (1075 թ.) տակ դնում են հետևյալ վկայաբանությունը։ Պատմվում է, որ Սեբաստիայում ապրում էր մի հայ իշխան, որը իր անդրանիկ Արև անունով որդու հետ բռնի կերպով մահմեդականացված էր։ Սակայն Դավթի կինը և Արևի մայրը մնացել էր քրիստոնյա և այդ կրոնով էր մեծացրել իր մնացած չորս որդիներին, որոնց անուններն էին՝ «Գոհարմելիք (կամ Գոհարինոս), Ռատիոս (կամ Ռատիկոս), Ծամիդես (կամ Ծամիդոս) և Տունկիոս (կամ Տուքիկոս)»։ Սրանք, չափահաս դառնալով, ընդունվում են զինվորական ծառայության մեջ և համարձակ պաշտում են քրիստոնեական կրոնը։ Սակայն շուտով հայտնում են, որ սրանք մահմեդականացած հոր զավակներն են։ Ուստի տեղական իշխանը ստիպեց նրանց պաշտել իրենց հոր և ավագ եղբոր կրոնը՝ մահմեդականությունը, սակայն սրանք կտրուկ կերպով մերժեցին կրոնափոխ լինել, ուստի չարչարանքներից հետո գլխատվեցին։[3] Սրանց գերեզմանը մինչև վերջերս ցույց էր տրվում Սեբաստիայի Սուրբ Նշան վանքում, որի վրայի արձանագրության տեքստը բերում է Գարեգին եպս. Սրվանձտյանը. «Այս նահատակք որ. կատարեցան սրով վասն Քրիստոսի. Ռատիոս եւ Գոհարինէ, Տնկիկ եւ Ծամիտէս։ Եւ եղան յայտնեցեալ ի ձեռն սուրբ վարդապետի Խարսղի. թուա. ՈԼՁ (1187)»։[4] Այս չորս եղբայրների նահատակության թվագրության հարցում գոյություն ունեն տարբեր կարծիքներ։ Ոմանք առաջարկում են 1136 թվականը, մյուսները՝ 604—1155 թ., իսկ ըստ Մաղաքիա արքեպս. Օրմանյանի հաշիվների, ճիշտ թվականը պիտի լինի՝ 1156 թ. հունվարի 28-ը։[5] Սակայն այստեղ մեզ հետաքրքրողը թվականը չէ, այլ այս չորս նահատակնե-

[1] Գամգաղեանցի, Փիլարտոս Հայր. հավելված, էջ ժ. Տես՝ Արշակ Ալպոյաճյան, անդ, էջ 486։

[2] Անդ։

[3] Մ. Օրմանյան, Ազգապատում, § 958, էջ 1296—1297։ Գարեգին եպս. Սրվանձտյան, Թորոս Աղբար, Ա. էջ 178։ Հ. Աճառյան և Հ. Մանանդյան — Հայոց նոր վկաները, հատ. Ա. 1903, էջ 10—82։ «Դիւան Հայոց պատմ.», հատ. Ժ. էջ 386. 401։ Յայսմաւուրք, Կ. Պոլիս, 1834, Բ. էջ 48.

[4] Թորոս Աղբար, Ա էջ 182—183։

[5] Մ. Օրմանյան, Ազգապատում, § 959, էջ 1307։

րից մեկի անունը «Խոռոխոս»։ Հարկավոր է նկատի ունենալ, որ Թաթա անվանը (առաջացել է Հրատատ անունից)[1] մենք պատահում ենք միայն Լիպարիտյանների տոհմում, իսկ հետո սրանցից առաջացած Կախաբերիձե տոհմում (տիրում էին Արգվեթին ու Ռաճային)։ «Լիպարիտ» և «Թաթա» Բաղուաշի-Լիպարիտյան տոհմի սեփական անուններն են և մինչև XIII դարը ոչ մի վրացի կամ հայ իշխանական տոհմում չենք պատահում։ Միայն հետագայում, երբ այս տոհմը դադարել էր գոյություն ունենալուց, Վրաստանում, ապա Հայաստանում, պատահում ենք «Լիպարիտ» անվանը, այն էլ սրանց հաջորդող Օրբելյան տոհմում, իսկ «Թաթա» անունը դառնում է շատ հազվագյուտ և գործ է ածվում ոչ վաղ, քան XIII դարի վերջերը, այն էլ միայն Վրաստանում։ Այս բոլորը ենթադրել է տալիս, որ «Թատիոս» «Թաթա» անվան հունական ձևն է և հռոմեական Սեբաստիա կարող էր մուտք գործել միայն և միայն Լիպարիտյան Թաթից հետո, որը, ինչպես տեսանք, պիտի լիներ Դանիշմանյանների հարստության հիմնադիր Դանիշման ամիրան (1071—1084)։ Թեև Գուարինյան վկայաբանության մեջ մենք ունենք արձագանքը կրոնափոխության հետ կապված ինչ-որ ընտանեկան դեպքի, որը կարող էր տեղի ունենալ Դանիշման-Թաթի ընտանիքում։ Շատ հետաքրքրական հարց, որը կարոտ է հատուկ ուսումնասիրության։

Այժմ նորից անդրադառնանք Իվանե Լիպարիտյանին։ 1058 թվի աշնանը, երբ Թոռնիկ Մամիկոնյանը Սուրբ Կարապետի վանքի մոտ մեծ ջարդ տվեց սելջուկներին, ինչպես երևում է, գրավեց նաև հարևան Արշամունիք և Հաշտյանք գավառները, որտեղ գտնվում էին Իվանե Լիպարիտյանի կալվածները։ Վերջինս, զրկվելով բոլոր այն հողերից, որ պարգևել էր նրան Իսահակ I Կոմնենոս կայսրը, ստիպված է վերադառնալ հայրենիք։

Լիպարիտը՝ այժմ կրոնավոր Անտոնը, հեռավոր Բյուզանդիոնից միջամտում է, որպեսզի Բագրատը ընդունի փախստական Իվանեին և կատարի իր տված ուխտը—երդումը՝ վերականգնել նրա որդու ժառանգական պատիվները և իրավունքները։ Եվ հիրավի, մի տարուց հետո, երբ Լիպարիտը ըմբոստ Իվանեին վերադարձրեց, Բագրատ IV, չնայած որ տանում էր իր լրիվ հաղթանակը Լիպարիտյանների հանդեպ, այնուամենայնիվ հարկադրված եղավ ճանաչել Իվանեի ժառանգական իրավունքները և արտոնությունները։ Բագրատը ղեկավարվում էր, անշուշտ, այն սկզբունքով, որ Իվանեն, իբրև կայսրության գավաճան, այլևս հովանավորություն չէր վայելի Բյուզանդիայի կողմից։ Մյուս կողմից, սկսվել էին ծանր օրերը՝ սելջուկների հաճախակի արշավանքները դեպի Հայաստանի խորքերը՝ սպառնում էին արդեն Վրաստանին։ Դեռ հիշողության մեջ թարմ էր Իվանեի որդու առաջնորդությամբ սելջուկների արշավանքը Վրաստանի սահմանամերձ վայրերում, ուստի բացարձակ թշնամական դիրք բռնել Իվանեի հանդեպ, նշանակում էր երկիրը մատնել թշնամու ներխուժման նոր վտանգին, մանավանդ որ Թաթը՝ մահմեդականացած Դանիշման ամիրան, կարող էր վրեժ լուծել Բագրատից իր տոհմակիցներին նեղություն պատճառելու համար։

Երբեմն հզոր Բյուզանդիան հետզհետե կորցնում է իր դիրքերը Հայաս-

[1] Տե՛ս Justi F., Iranisches Namenbuch. Marburg, 1895, էջ 259, 445։

տանում և Վրաստանում, իսկ սելջուկների ասպատակությունները հասնում են մինչև Փոքր Ասիայի բյուզանդական պրովինցիաները։

Վերադարձած Իվանեին Բագրատ IV-ը ընդունեց և ճանաչեց նրա ժառանգական իրավունքները։ «Տարթլիի մատյանի» ասելով. Բագրատը «պարգևեց Իվանեին Արգվեթի և Թաքթլի հայրենիքը և [Վերջինս] ծառայում էր նրան միամիտ և միաբան էր սրա թագավորության թշնամիների հետ և սպասավոր էր նրա (Բագրատի) շնորհիվ»։[1]

Այժմ թագավորի և Լիպարիտյանների շահերը համընկնում էին։ Իվանե Լիպարիտյանը և Բագրատը իրենց հաշիվներն ունեին Թբիլիսիի ամիրայության և Տաշիր-Ձորագետի Կյուրիկյանների թագավորության հետ. մանավանդ վերջինիս, որը հարավից անմիջապես սահմանակից էր Իվանեի հայրենիքին և սպառնում էր նրան։

Բյուզանդացիների արևելյան քաղաքականության շնորհիվ և սելջուկների արշավանքների հետևանքով ոչնչացվեցին գրեթե բոլոր հայկական թագավորություններն ու իշխանությունները, մնում էին միայն անմատչելի լեռներում ապաստանած, Սյունյաց—Կապանի թագավորությունը և Տաշիր-Ձորագետի Կյուրիկյանների թագավորությունը։ Վերջինս Հայ Բագրատունիների միակ օրինավոր ժառանգն էր Շիրակի և Վանանդի թագավորությունների անկումից հետո։ Ինչպես ճիշտ նկատում է պրոֆ. Ե. Ա. Պախոմովը՝ „был момент, когда лорийский царь играл роль главы Армении и притом в то время, когда Ани и другие соседние с его владениями области находились в руках византийцев“.[2] Կյուրիկյան թագավորության ներքին և արտաքին քաղաքականության այդ ակտիվացումը առանձնապես նկատելի է դառնում Դավիթ Անհողինի և նրա որդի Կյուրիկե II-ի օրով։ Վերջինս նույնիսկ դրամ է կտրում իր անունով և հովանավորություն է վայելում Բյուզանդիայի կողմից. իբրև մի ուժ, որը կոչված էր հակադրվելու օրեցօր զորացող վրաց-աբխազական պետությանը և սելջուկներին։[3]

Բագրատ IV-ը ընտանեկան կապերով կապված էր Կյուրիկյանների հետ. իր քույրը՝ Կատան, Կյուրիկե II-ի կինն էր, սակայն այդ ազգակցական կապերը խոչընդոտ չէին հանդիսանում մտածելու միջոցից վերացնելու այդ թագավորությունը, որը նույնպես ձգտում էր տեր դառնալ այնպիսի կարևոր կետին, ինչպիսին էր Թբիլիսին և իր շրջակայքը։ Ինչպես տեսնում ենք, Թբիլիսիի ամիրայության ժառանգության վրա աչք ունեին վրաց-աբխազական թագավորները, Լիպարիտյանները և Կյուրիկյանները։ Սրանց մեջ, իհարկե, վրաց-աբխազական թագավորներն ավելի մեծ իրավունքներ ունեին Թբիլիսին գրավելու։ Նրանք, իբրև միացյալ Վրաստանի թագավորներ, գրավելով ամբողջ Տարթլին, այսինքն Վրաց աշխարհը, բնականաբար, պիտի ձգտեին նրա կենտրոնը, վրացական վաղեմի մայրաքաղաքը, դարձնել իրենց քաղաքական կենտրոնը։ Լիպարիտյանների ուժը արդեն ջլատված էր և Բագրատ IV-ի համար Թբիլիսիի հարցում

[1] ქართლის ცხოვრება, ანა დედოფლისეული ნუსხა, სიმონ ყაუხჩიშვილის რედაქციით. თბილისი, 1942, 190 (այսուհետև՝ ა. ქ. ცა).

[2] Е. Пахомов, О монете Корикэ куропалата, Известия Кавказского Историко-Археологического Института, том III, Тифлис, 1925, стр. 44—45.

[3] Անդ, passim.

միակ մրցակիցը կարող էր հանդիսանալ իր փեսա Կյուրիկե II-ը, ուստի սպասում էր հարմար առիթի, որպեսզի նրան ենթարկի իրեն, և այդ առիթը երկար սպասել չտվեց։

1064—1065 թ.թ. տեղի ունեցավ Ալփ-Արսլան սուլտանի առաջին արշավանքը դեպի Վրաստան՝ Ջավախք գավառը ներխուժած թշնամին կոտորեց Ախալքալաքի ազգաբնակությունը։ Բագրատ IV-ը, տեսնելով, որ ինքը իր ուժերով անկարող է դիմագրել թշնամուն, աշխատում է բարեկամական կապեր հաստատել սուլտանի հետ։ Վերջինս, Անիի վրա արշավելուց հետո, Բագրատ IV-ից պահանջում է Կյուրիկե II-ի դուստրը կնության տալ իր քեռորդուն։ Կյուրիկեն մերժեց այս առաջարկը, և այս առիթից օգտվեց Բագրատը։ Նա դեսպանի անվան տակ զորքով ուղարկում է իր էրիսթավ Վարազ-Բակուր Գամրեկելի-Թորելուն,[1] որին հաջողվում է Քվեշի պաշարված ձերբակալել Կյուրիկե II-ին և նրա եղբորը՝ Սմբատին։ Բագրատ IV-ը իր ձեռքը գցելով նրանց, ստիպեց իր փեսային, որ սա իր աղջկանը կնության տա Ալփ-Արսլան սուլտանին, ապա մի շարք խոշտանգումներից հետո ստիպեց նրան իրեն հանձնել Կյուրիկյանների մայրաքաղաքը՝ Սամշվիլդեն։ Այդպիսով՝ Բագրատ IV-ը «գրավեց Սամշվիլդեն, որը միացրեց իր թագավորությանը»։[2] Բագրատ IV-ի այս արարքը առաջ է բերում Տաշիր Ձորագետի և Կախեթի Կյուրիկյանների անհաշտ թշնամությունը և ատելությունը նրա հանդեպ։ Կյուրիկե II-ը, Սմբատը և Կախեթի Աղսարթան (1058—1084) թագավորները դառնում են Բագրատ IV-ի ամենաոխերիմ թշնամիները։ Սրանց միանում է նաև Գանձակի Փադլուն ամիրան։ Սրանք միասին օգնում են սելջուկներին ասպատակել Բագրատ IV-ի երկիրը։ Սրանց խրախուսանքով և օգնությամբ Ալփ-Արսլանը 1068 թվականին արշավում է վիրա-ափխազաց թագավորի դեմ, և Վրաստանը դառնում է սելջուկ հրոսակախմբերի ասպարեզ։ Սրանք 1068 թվականի ձմեռը արշավեցին Թարթլիի խորքերը, ավերեցին այն, ապա անցան Լիխի լեռներից հայնկույս գտնվող Արգվեթի գավառը և ասպատակեցին այն մինչև Սվերի բերդը։ «Հացով և գինով և ամեն բարիքներով ու ազգաբնակությամբ լի երկիրը վեց շաբաթվա ընթացքում ամայացավ և դատարկվեց։ Սաստիկ ձմեռը սուլտան Ալփ-Արսլանին ստիպեց Թարթլիում Կարբի գյուղից իջնել դաշտը՝ Շերթուլթա վայրը, որտեղ նա ընդունեց Բագրատ IV-ի դեսպանին։ Վերջինս «դեսպան ուղարկեց սուլտանի մոտ Լիպարիտի որդուն՝ Իվանեին, խաղաղություն հայցելու համար»։[3] Իվանեն, ինչպես տեսանք, դեռևս 1058 թ. ծառայություն էր մատուցել սելջուկներին։ Սուլտանը նեղն էր ընկել՝ սաստիկ ձմեռը ստիպեց նրան թողնել Վրաստանը և հեռանալ, ուստի նա ուրախությամբ ընդունեց թագավորի դեսպանին և անմիջապես «վերադարձրեց նրան Ափխազեթ՝ Բագրատի մոտ, պահանջելով նրանից խարաջ և [փոխարենը] խաղաղություն խոստանալով»։[4] Սակայն դեռ բանակցությունները չվերջացրած, սուլտանը շտապեց

[1] ლ. მუსხელიშვილი, თორელთა გენეალოგიის ცდა. [illegible] XII ს-ის წარწერებთან [illegible]. საქართველოს სახელმწიფო მუზეუმის მოამბე, X-B, ტფილისი, 1940, 32.

[2] Վրաց. 102, և Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հ. Ա, էջ 208. Տես՝ նաև ჯავახიშვილი, ქართველი ერის ისტორია, წ. II, ტფილისი, 1914, 147—151: Մանանդյան, անդ, էջ 34—35։

[3] Վրաց. 103

[4] Անդ.

թողնել Վրաստանը՝ Գանձակի ամիրայության տակ շրջաններում ձմեռելու համար։ Գանձակի ամիրա Փադլունին, ի դիմաց նրա ծառայությունների, սուլթանը շնորհում է Թբիլիսի և Ռուսթավի քաղաքները։ Տեր դառնալով սրանց,[2] Փադլունը ձգտում է գրավել շրջակա երկրները և առաջին հերթին Քարթլին։ Գարնանը Փադլունը ասպատակում է Քարթլիի սահմանները։ Բագրատ IV-ը այս ժամանակ գտնվում էր իր ամառանոցներից մեկում՝ Դիդգորում (Թբիլիսիի շրջակայքում), որտեղից Փադլունի դեմ ուղարկում է Լիպարիտի որդուն՝ Իվանեին և այլ դիդեբուլներին ու ազնաուրներին։ Վրացական բանակը ջախջախեց Փադլունին, որը հազիվ փրկեց իր անձը՝ ձողոպրելով տասնհինգ ձիավորների հետ միասին, սակայն ի վերջո նա գերի ընկավ Բագրատ IV-ի ձեռքը և վերջինս «էառ ի նմանէ զՏփխիս եւ զԴաղ և զԴոզին, զոր առեալ էին Պարսք ի Հայոց և ի Վրաց»[1]։ Այս անգամ Ալփ-Արսլանը միջնորդ դուրս եկավ, և Բագրատը Փադլունի հետ խաղաղության դաշինք կնքեց, ազատեց նրան գերությունից և վերադարձրեց Գանձակը, որի փոխարեն Փադլունը Բագրատին հանձնեց Գագա բերդը իր շրջակայքով։ Սա Բագրատ IV-ի խոշոր հաղթանակն էր և միևնույն ժամանակ Լիպարիտյանների կալվածների ազատագրումը թշնամիներից։ Այնուհետև Իվանեն վերստին տեր է դառնում իր կալվածներին Արգվեթում և Թրիալեթում, իսկ նրա որդուն՝ Լիպարիտին, Բագրատ IV-ը պարգևում է Ռուսթավի քաղաքը։ Ինքը թագավորը իր բնակությունը հաստատում է Սամշվիլդե քաղաքում։ Այս արդեն Կյուրիկյանների կատարյալ պարտությունն էր։ Տաշիր—Ձորագետի Կյուրիկյանները իրենց քաղաքական կենտրոնը փոխադրում են Լոռի քաղաքը և ձգտում են բարեկամական կապեր հաստատել Ալփ-Արսլանի հետ, և այդ հանգամանքը մի առժամանակ հնարավորություն է տալիս նրանց փրկել իրենց նվաղած պետությունը կործանումից։

Մելիք-Շահ (1072—1092) սուլթանի ժամանակ սելջուկների աշխարհակալությունը հասնում է իր հզորացման գագաթնակետին։ Վրաստանն այս շրջանում ժամանակավորապես թուլանում է, և վրաց ու հայ Բագրատունիները դառնում են սելջուկների հարկատուներ։

1072 թվին, երբ գահ բարձրացավ Բագրատ IV-ի հաջորդն ու որդին՝ Գեորգի II-ը (1072—1089), երկիրը թուլացել էր սելջուկների արշավանքներից և մի առժամանակ թուլանում է, վրացի Բագրատունիների կենտրոնաձիգ քաղաքականությունը։ Նորից ծայր են առնում խոշոր ֆեոդալների փորձերը՝ կենտրոնական իշխանությունը դարձնելու իրենց հլու և կամակատար խաղալիք։ Դիդեբուլները, և նրանց մեջ Լիպարիտյանները, բազմիցս ապստամբում են թագավորի դեմ։ Գեորգի II-ը տիրող պայմաններում ստիպված աշխատում էր մեղմ միջոցառումներով շահել ըմբոստ իշխանների սիրտը։ Դիդեբուլները, օգտվելով նոր թագավորի թուլությունից, 1073 թվին ապստամբում են։ Գեորգի II-ը աշխատեց փոխադարձ համաձայնության գալ ապստամբ էրիսթավների հետ։ Իվանե Լիպարիտյանին թագավորը պարգևում է Սամշվիլդե քաղաքը և ամբողջ «Վրաց դաշտը», իսկ որդուն՝ Լիպարիտին տալիս է Լոծոբանի ամրոցը Կախեթում. Ռուսթավի փոխարեն՝ որը նա շնորհում է Կախեթի թագավոր Ազսարթանին։ «Քարթլիի մատյանի»

[1] Ժամանակագրի՝ Համառոտ պատմություն վրաց. Վենետիկ, 1884, էջ 113—114.

[2] ივ. ჯავახიშვილი, II, 152—156

տալով՝ Գեորգի II-ը «պարգևեց Իվանեին Սամշվիլդեն և Իվանեի որդուն՝ Լիպարիտին տվեց Լոռեի բերդը. Թուսթավի փոխարեն, որը (թագավորը) տվել էր կախերին»։[1]

Սակայն Իվանեն նորից է ապստամբում։ Գեորգի II-ը այս անգամ հարկադրված է դիմել կտրուկ միջոցների։ Նա Քութաթիսից գալիս է Սամցխե և մեծ բանակով շրջապատում է Սամշվիլդեն։ Նրան օգնության է գալիս Կախեթի թագավոր Աղսարթան Կյուրիկյանը։ Իվանե Լիպարիտյանը փախչում է. ապաստանելով Սոմխիթի լեռները[2] Թագավորը Իվանեի որդուն՝ Լիպարիտին, գրկում է Լոռեի ամրոցից, որը վերստին վերադարձնում է Աղսարթանին և ինքը գնում է Ջավախք։ Փախստական Իվանեն շտապում է թագավորի տեսության՝ նրանից ներում ստանալու համար և գալիս է Էկրանթա գյուղը։ Այստեղ հաշտություն է կայանում թագավորի և ըմբոստ վասալի միջև։ Գատմագրի ասելով՝ «ուխտեցին Էկրանթայում, և Իվանեն հաստատվեց Կլդեկարի և Սամշվիլդեի վրա» (დაითეცნეს თას. დაიმტკიცა ივანე კლდა-კართა და სამშჳლდეს[3]

Սակայն, 1073 թվից Լիպարիտյանները տիրում են Սամշվիլդեին, սակայն այս դրությունը երկար չի տևում։ Իվանեն ապստամբում է թագավորի դեմ երրորդ անգամ։ «Նա խարեությամբ խլեց Գագը Գեորգի թագավորի բերդապահներից և ծախեց այն Փադլունին՝ Գանձակի պատրոնին»։[4] Փադլուն ամիրան, որը զրկվել էր այնպիսի կարևոր ռազմա-ստրատեգիական կետից, ինչպիսին էր Գագը՝ այժմ նորից տեր է դառնում նրան։ Դեպքը տեղի ունեցավ այն ժամանակ, երբ Մելիք-շահ սուլթանը արշավեց դեպի Վրաստան։ Երբ սուլթանի զորքերը երևացին Իվանեի տիրության սահմաններում, վերջինս շտապեց հայտնել իր հպատակությունը. «ընդառաջ ուղարկեց Իվանեն իր որդուն՝ Լիպարիտին իբրև պատանդ և այդպիսով կարողանում է խաղաղեցնել սուլթանին»։ Սակայն, Լիպարիտը «մնալով կարճ ժամանակով, գաղտագողի փախավ։ Զայրացած սուլթանը գալիս՝ «պաշարում է Սամշվիլդեն և տանում է այն, գերի է վերցնում Իվանեին իր կնոջով և թոռով (իմա՝ Ուստին) և բոլոր ազնաուրների կանանցով՝ և գրավեց Սամշվիլդեն սուլթանը»։ Սամշվիլդեից սուլթանը իր զորքերն ուղարկում է Քարթլի, որոնք ասպատակում և ավերում են երկիրը։ Մելիքշահը այնուհետև նվաճում է Գանձակի ամիրայությունը։

Այս դեպքերը տեղի ունեին 1074 թվին, այսինքն Մանազկերտի 1071 թվի վճռական ճակատամարտից հետո, երբ բյուզանդացիները ստիպված եղան քաշվեցին. Թուրք սելջուկներին թողնելով ամբողջ Հայաստանն ու Վրաստանը, որոնք ընկնում են նրանց գերիշխանության ներքո։ Այսպես է վարջանում Իվանեի իշխանությունը։

---

[1] [illegible], 198. Տես նաև Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, Վրաց աղբյուրները, հ. Ա, էջ 208։

[2] Անդ։

[3] Անդ։

[4] Անդ։ Նույն բառերով չէ պատմում այս դեպքը հայերեն խմբագրության մեջ (Ջուանշեր, 114)՝ «Եւ ապստամբեաց ի նմանէ Իւանէ՝ որդին Լիպարտի. եւ յինքն յանկուցեալ զպահապանս դղեկին Գագայ՝ վաճառեաց զնա դարձեալ տեառն Գանձակայ»։ Տես նաև Լ. Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ, անդ։

[5] Անդ։

[6] Հ. Մ ա ն ա ն դ յ ա ն, Հայաստանի պատմությունը թուրք-թաթարական արշավանքների շրջանում, Երևան, 1922, էջ 38-40։

«Դավիթ արքայից արքայի պատմության» հեղինակը ևս ասում է, որ «եկավ սուլթան Մալիք-շա(հ)ը, պաշարեց Սամշվիլդեն և տարավ այն, Լիպարիտի որդի Իվանեին գերի վերցրեց, ավերեց Սոմխիթը և գնաց»[1]։ Այնուհետև երկար ժամանակ Սամշվիլդին և ամբողջ «Վրաց դաշտը» դառնում է սելջուկների կենտրոնավայրերից մեկը, որտեղից նրանք պարբերաբար խուժում են Վրաստանի ու Հայաստանի գավառները և ավերում ու գերեվարում այդ երկրները։ Կուր գետի ամբողջ հովիտը դառնում է վաչկատուն թուրք ցեղերի ձմերոց, իսկ Հայաստանի ալպյան դաշտերը դառնում նրանց ամառային արոտավայրերը։ Թբիլիսի և Սամշվիլդե քաղաքների կառավարությունը Մելիք-շահը հանձնում է իր զորավարներից մեկին Սրահանգ ամիրային[2]։ Այնուհետև մենք տեղեկություն չունենք Իվանեի և նրա որդի Լիպարիտի մասին։ Ինչպես տեսանք, Մելիք-շահը Սամշվիլդեն վերցնելուց հետո գերի տարավ Իվանեին իր ընտանիքով, որոնց թվում նաև թոռանը, այսինքն Լիպարիտի որդուն՝ Ռատին։ Լիպարիտը փախչելով Մելիք-շահից, ինչպես երևում է, Սամշվիլդե չի գալիս, այլ թաքնվում է, երևի Կղեկարնի ամրոցում։ Երբ Իվանեին գերի տարան, Գեորգի II-ը հավանաբար, Լիպարիտին ճանաչում է Արգվեթի և Թրիալեթի էրիսթավ։ Այդ ապացուցվում է ներքոհիշյալ վկայությամբ։ Դավիթ II Շինող թագավորի գահ բարձրանալու պարագաները պատմելիս նրա պատմաբանը հայտնում է, որ «այդ ժամանակները Թրիալեթը և Կղեկարնի բերդը շրջակա երկրներով ուներ Լիպարիտը և հավատարիմ էր նա Դավիթ թագավորին»[3]։ Սրա հետ միասին նույն պատմագիրն ունի հետևյալ վկայությունը. Դավիթ Շինողի թագավորության չորրորդ տարին՝ 1092 թվին, «վախճանվեց սուլթան Մալիք-շահը և Լիպարիտ ամիրան սկսեց գնալ իր հայրերի և պապերի ճանապարհով», այսինքն՝ մտածում էր ապստամբել թագավորի դեմ և միանալ սելջուկներին[4]։ Տվյալ հատվածը ցույց է տալիս, որ այս Լիպարիտը նույն Լիպարիտյանների տոհմիցն է և Իվանեի որդին է։ Արդ, հարց է ծագում, թե ինչ պարագաներում է ստացել Լիպարիտը «ամիրա» տիտղոսը։

Մխիթար Այրիվանեցին 1081—1884 թ. թ. միջև հիշատակում է՝ «Թագաւորն Հայոց Կիւրիկէ և Վրաց Գեորգի և կաթուղիկոսն Հայոց տէր Բարսեղ գնացին առ Մելիք-շահ սուլտանն և դարձան պատուով»[5]։ Մելիք-շահը ընդունեց Գեորգի II-ին «իբրև սիրելի որդի»[6] և «բոլոր խնդրվածները

[1] ამისსა შემდგომად მოვიდა მალიქ-შაჰ, მოადგა სამშუილდეს და წარიღო, ივანე-ძე ლიპარიტისი ტყუე ყო, მოაოხრა სომხითი და წარვიდა. [ცხოვრება მეფეთ—მეფისა დავითისი], 200.

[2] Հ. Մանանդյան, անդ., էջ 56, ծանոթ.։

[3] და მათ ჟამთა შინა ქონდეს თრიალეთი და კლდე-კარი და მიმდგომი მისი ქუეყანა ლიპარიტს, და მეფესა დავითს წინაშე იყო რეცა ერთგულად. ქ. ცხ. ა. 205.

[4] ხოლო ამა ვითარობასა შინა გარდახდა წელიწადი ოთხი. მოკუდა სულტანი მალიქ-შა და ლიპარიტ ამირამან იწყო მათვე მამულ-პაპურთა გზათა სლვა. Անդ.։

[5] Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց. Մոսկվա, 1860, էջ 60։ Սամուէլ Անեցին (Սամուէլի քահանայի Անեցւոյ՝ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց յաղագս գիւտի ժամանակաց անցելոց մինչև ի ներկայս ծայրաքաղ արարեալ, Վաղարշապատ, 1893, 118) այս դեպքը դնում է 1078 թվին՝ «Ի ՇԻԷ. թվին ի սուլտանն գնացին Հայոց և Վրաց թագաւորքն՝ Կիւրիկէ և Գորգի»։ Նույնը տես՝ Ստեփաննոսի Օրբէլեանի՝ Ժամանակագրութիւն։ Երևան, 1942, 18։

[6] [ცხოვრება მეფეთ-მეფისა დავითისი] ა. ქ. ცა, 202.

կոտորեց Գեորգի թագավորին... և թագավորությունը նորա ազատեց ասպատակողներից, ապա առնեց նրան Կախեթը և Հերեթը, սակայն պահանջեց խարաջ նրա թագավորությունից, որը նրանք վերցնում էին բազում ժամանակ»:[1] Ահա այս ժամանակ պետք է վերագրել գերի տարված ազնվականները և նրանց ընտանիքները, որոնց թվում նաև Լիպարիտը, որի մասին մենք այլևս տեղեկություն չունենք: Թվում է, թե նա այս ժամանակ արդեն մահացած էր: Քանի որ Լիպարիտի և թագավորի շահերն այս ժամանակ մի էին, առաջինը հավատարիմ էր իր պատրոնին: Անշուշտ, սելջուկների շնորհիվ է, որ այս Լիպարիտը «ամիրա» տիտղոսն է կրում: Սովորաբար այդ տիտղոսն էին կրում քաղաքի կառավարիչները, սակայն աղբյուրներից մենք գիտենք, որ ոչ Սամշվիլդեին, ոչ Թբիլիսիին այս ժամանակ Լիպարիտը չէր կարող տիրել.[2] ուրեմն մնում է ենթադրել, որ «ամիրա» տիտղոսը սոսկ պատվանուն էր, որ Լիպարիտը ստացած պետք է լիներ Մելիք-շահից: Այս ենթադրությունը հիմնավորվում է ավելի ևս, եթե հիշենք Սամվել Անեցու (էջ 118) հետևյալ հետաքրքրական վկայությունը: Նրա ասելով՝ «Ի ՇԼԱ (1082) թվին Լիպարիտն առնիկ եղև»:[3] Ինչպես երևում է, այս կատարվել է Մելիք-շահի դռանը, Սպահանում, որը այնուհետև նրան շնորհել է «ամիրա» տիտղոսը, իբրև իրեն հավատարիմ ծառայի: Արժանանալով մեծ պատիվների, Լիպարիտը նորից վերադարձել է հայրենիք: Ինչպես տեսնում ենք, սա առաջին դեպքը չի, որ Լիպարիտյանները կրոնափոխ են լինում իրենց քաղաքական կարիերայի նպատակով:

Մելիք-շահի մահից հետո «Լիպարիտ ամիրան սկսեց գնալ իր նախնիների՝ հայրերի և պապերի ճանապարհով» և 1093 թվին ապստամբեց Դավիթ Շինողի դեմ, սակայն վերջինս կալանավորեց նրան: Լիպարիտը ուխտեց, որ հավատարիմ կլինի իր տիրոջը, ուստի թագավորը ազատեց նրան կալանքից, համարելով, որ այս դասը կլինի ըմբոստ ծառայի համար: Սակայն Լիպարիտը 1095 թվին նորից ապստամբեց, և թագավորը նորից կալանավորեց նրան և երկու տարի բանտարկելուց հետո՝ 1097 թվին, արտաքսեց Վրաստանից, ուղարկելով նրան Բյուզանդիա: Թագավորի այս կտրուկ միջոցառումները պետք է բացատրել ստեղծված ընդհանուր դրությամբ: Մելիք-շահի մահից հետո սկսվում է սելջուկների աշխարհակալության քայքայումը, որը ավելի ևս խորացավ խաչակրաց արշավանքների շնորհիվ: «Դավիթ արքայից արքայի պատմության» հեղինակը հաղորդում է, որ, երբ «դուրս եկան ֆրանգները, վերցրին Երուսաղեմը և Անտիոքը... օգնությամբ Աստուծո շենացավ Քարթլիի երկիրը, Դավիթը հզորացավ, բազմացրեց իր բանակը և դադարեց խարաջ տալ սուլթանին»: Այնուհետև «թուրքերը այլևս չէին կարող ձմեռել Քարթլիում»: Երուսաղեմը խաչակիրները

1 Անդ. էջ 203.

Դավիթ արքայից-արքայի պատմագիրը հաղորդում է, որ Դավիթ Շինողի թագավորության առաջին տարիները՝ «Թբիլիսի քաղաքը, Արտաթավը և Սամշվիլդը՝ համայն Սամշվիլդեն և Աղարանին, թուրքերի ձեռքին էր»: Անդ. էջ 210.

Տե՛ս նաև Ստեփաննոս Օրբելյանի ժամանակագրություն, Երևան, 1942 թ., էջ 15.

... ქ. ც., 205.

Անդ. 206. Չամչյան, էջ 116–117, տե՛ս ივ. ჯავახიშვილი, II, 508.

... ქ. ც., 206.

վերջերին 1097 թվին, որից հետո, ուրեմն, Վրաստանը դադարել էր հարկատու լինել սելջուկներին, դառնալով բոլորովին ինքնուրույն և անկախ[1]։

Դավիթ Շինողը առաջին հերթին ոչնչացնում է Կախեթի ինքնուրույնությունը՝ միացնելով այն Վրաստանին (1104—1105 թ. թ.)։ Նույն այս ժամանակ, պատմաբանի ասելով՝ «վախճանվեց Ռատը՝ Լիպարիտի որդին, երկմիտ մարդ և իսկապես այսածին»։ Այնուհետև պատմագիրը շարունակում է. «Այսպես կատարվեց Բաղվաշների տունը, դառնացողների տունը... և ոչ ոք մնաց ժառանգ նրանց ժառանգության, որովհետև բացվեց նրանց նախնիների ամբարշտությունը Աստծու առաջ և նրանց հայրենիքը վերցրեց թագավորը»[2]։ Բերած հատվածից մենք իմանում ենք, որ Լիպարիտին աքսորելուց հետո՝ 1097 թվին, նրա ժառանգության տերն է դառնում որդին՝ Ռատը։ Նա երկար չի ապրում, 1105 թվի մոտերքը մահանում է անժառանգ, ուստի թագավորը Լիպարիտյանների ամբողջ կալվածները գրավում է հարքունիս։ «Դավիթ արքայից արքայի պատմության» հեղինակը մի այլ տեղ, այնտեղ, որտեղ նա խոսում է Գելաթի վանքի հիմնադրման մասին, ասում է՝ «Լիպարիտեթ հայրենիքը մնացել էր անժառանգ, ուստի այլ բազմաթիվ... գյուղերի հետ միասին այն ևս տվեց Գելաթի Տիրամորը, իբրև պաշտոնի տեղեր նրա (թագավորի) բարեխոսների...»[3]։ Ուրեմն՝ թագավորը Լիպարիտյանների երկիրը շնորհել է 1106 թվին հիմնված՝ Գելաթի վանքին և, ինչպես երևում է, կառավարվել է եկեղեցականի կողմից։ Խոսելով Սամշվիլդեն և շրջակա վայրերը 1110 թվին նվաճելու մասին, նույն հեղինակը մատնանշում է, որ մինչև այս ժամանակ՝ «Թրիալեթը և Կլդեկարնի բերդը ուներ ճղոնդիդելի քեռորդին Թեոդորեն»[4]։ Լիպարիտյան ժառանգության կառավարիչն էր, ըստ իս, Գեորգի ճղոնդիդելի և մծիգնոբարթ-ուխուցեսի քեռորդի Թեոդորեն։ Ո՞վ էր այս Թեոդորեն, արդյո՞ք ազգական էր Լիպարիտյաններին։ 1110 թվին, պատմագրի ասելով՝ «հավաքվեցին Գեորգի ճղոնդիդելի և մծիգնոբարթ-ուխուցեսի մոտ Թևդորեն, Աբուլեթը և Իվանե Օրբելին, և հարմար ժամանակ գտնելով գողացան Սամշվիլդեն»[6]։ Այստեղ արդեն տեսնում ենք, որ գոնե երկուսը սրանցից, Աբուլեթը և Իվանեն, Օրբելների տոհմից են։ Աբուլեթ անվանը պատահում ենք միայն այս տոհմում։ Եթե այս երկուսը մի տոհմից են, պետք է ենթադրել, որ Թևդորեն ևս նույն Օրբելի տոհմի ներկայացուցիչն է և լինելով հոգևորական՝ հանդես է գալիս իր հոգևոր անունով։ Թերևս սրանք երեքն էլ՝ Թևդորեն, Աբուլեթը և Իվանեն եղբայրներ են և Գեորգի ճղոնդիդել և մծիգնոբարթ-ուխուցեսի քրոջ որդիները։ Ուրեմն, շնորհիվ այդ բարե-

[1] ივ. ჯავახიშვილი, II, 509.

[2] მოკუდა რატი, ძე ლიპარიტისი, კაცი ორგული და ნანდვილვე ნაშობი ექიდნეთა. ესრეთ დასრულდა სახლი ბაღუაშთა, სახლი განმამწარებელთა:... და არღარავინ ჰდაშთა სამკვიდრელთა მათთა მკვიდრი, რამეთუ აიხსნა უსჯულოება მამათა მათთა წინაშე უფლისა, და მამული მათი აღიღო მეფემან. [ცა მეფეთ მეფისა დავითისი], ა. ქ. ცა, 206.

[3] და მამული ლიპარიტეთი უმკვიდროდ დარჩომილ იყო, არამედ სხუათა მრავალთა.. სოფლებთა თანა მისცნა დედასა ღმრთისასა, სამსახურებელნი წინაშე მდებმელთა მისთათვის.., Անդ. 209։

[4] ივ. ჯავახიშვილი II, 536–537.

[5] Անդ, 210։

[6] შეკრბეს გიორგი ჭყონდიდლის წინაშე და მწიგნობართ-უხუცესსა თევდორე, აბულეთ და ივანე ორბელი, და სიმარჯუით მოიპარეს სამშვილდე, Անդ։

կոմական կապերի, Գեորգի ճղոնդիդել և մծիգնոբարթ-ուխուցեսը Գելաթի վանքին շնորհված Լիպարիտյանների կալվածների կառավարիչ է նշանակում Օրբելների տան ներկայացուցիչներից մեկին, հավանաբար հոգևորական կոչում ունեցող Թևդորեին։

1103–04 թվին մծիգնոբարթ-ուխուցեսի պաշտոնը Դավիթ Շինողը հանձնում է իր ամենամոտ և մտերիմ մարդուն՝ կրոնավոր Գեորգուն,[1] իսկ 1106 թվից, ըստ երևույթին, սա դառնում է նաև ճղոնդիդի արքեպիսկոպոս՝ ճղոնդիդելի։ Այս ժամանակվանից սկսած մծիգնոբարթ-ուխուցեսի պաշտոնը անբաժան էր ճղոնդիդելի եպիսկոպոսի պատվից։[2] Գեորգին՝ իբրև մծիգնոբարթ-ուխուցեսի և ճղոնդիդել, դառնում է պետության ամենաազդեցիկ մարդը՝ «առաջին վազիրը»։ Նա էր վարում թագավորության բոլոր գործերը։ Այդ ժամանակ ամիր-սպասալարի պաշտոնն դեռևս գոյություն չուներ, ուստի սա կանգնած էր նաև զորքի գլուխ։[4] Գեորգի մծիգնոբարթ-ուխուցեսի և ճղոնդիդելի ղեկավարությամբ պատերազմներ էին մղվում սելջուկների դեմ. 1110 թվին նվաճվում է Սամշվիլդեն,[5] 1115 թվին՝ Ռուսթավը։ Իբրև պետության «առաջին վազիր», մծիգնոբարթ-ուխուցեսն և ճղոնդիդելի Գեորգին ղեկավարում էր նաև եկեղեցական գործերը։ Սրա իրավասության տակ էին հատկապես վանքապատկան հողերը։ Մենք տեսանք, որ 1105 թվի մոտերքը, երբ վախճանվեց վերջին Լիպարիտյան Ռատը, իբրև անժառանգ, նրա հայրենիքը՝ «Լիպարիտեթը», թագավորը գրավեց հարքունիս, իսկ մի տարուց հետո՝ 1106 թվին, երբ հիմնվեց Գելաթի վանքը, ի թիվս մյուս հողերի, թագավորը այս վանքին շնորհեց նաև «Լիպարիտեթը»։ Գեորգի մծիգնոբարթ-ուխուցեսը այս ժամանակն է, որ ստանում է ճղոնդիդելի պատիվը և, իբրև վանքապատկան կալվածների վերակացու, «Լիպարիտեթի» կառավարիչ է նշանակում իր քեռորդուն՝ կրոնավոր Թևդորեին, որը, ինչպես տեսանք, պիտի լիներ Աբուլեթ և Իվանե Օրբելների եղբայրը։ Սրանց եղբայրը պիտի լիներ մի այլ կրոնավոր՝ Սվիմոնը, որ այս ժամանակ Ռուիսել–Ալավերդելին էր, այսինքն՝ Ռուիսայի և Ալավերդու եպիսկոպոսական թեմերի պետն էր։[7] Ուշագրավ է, որ 1118 թվին, երբ Գեորգին մահացավ, Դավիթ Շինողը մծիգնոբարթ-ուխուցեսությունը շնորհում է նրա քեռորդուն՝ հիշյալ Սվիմոնին, որը 1125 թվից ստանում է նաև ճղոնդիդելի պատիվը։[9] Այստեղից, բնականաբար, հետևում է այն միտքը, որ 1123 թվից, երբ Դավիթ Շինողը պիտի ամիր-սպասալարի պաշտոնի սկիզբը դներ, այդ պատիվը ստացավ Սվիմոնի եղբայրը՝ Իվանեն

---

[1] ივ. ჯავახიშვილი, ქართული სამართლის ისტორია, წიგნი მეორე, ნაკვეთი პირველი, ტფილისი, 1928, 125–126. ნ. ბერძენიშვილი, სავაზირო ფეოდალურ საქართველოში, ჭყონდიდელ-მწიგნობართუხუცესი. აკად. ნ. მარის სახელობის ენის, ისტორიისა და მატერიალური კულტურის ინსტიტუტის მოამბე, V–VI, თბილისი, 1940, 395–396.

[2] Ակադ. Իվ. Ջավախիշվիլին դնում է այդ 1103—1110 թ. թ. միջև։ Տես նրա վերոհիշյալ աշխատությունը, անդ։

[3] Անդ։

[4] Տե՛ս ივ. ჯავახიშვილი, ქართული სამართლის ისტორია, წიგნი მეორე, ნაკვეთი პირველი, 130–131.

[5] ა. გ. ცხ., 210—211.

[6] Անդ, 211. ივ. ჯავახიშვილი, II, 512.

[7] ივ. ჯავახიშვილი, ქართული სამართლის ისტორია, II, ა, 132.

[8] ნ. ბერძენიშვილი, სავაზირო ფეოდალურ საქართველოში 396–397.

[9] Անդ։ Արդյո՞ք այս Սվիմոնը նույն Աբուլեթը չէ։

ամբողջ «Սոմխիթով» ու Սամշվիլդե կենտրոնով հանդերձ, և սա առաջինն է պատմության մեջ, որ կրում է «Օրբելի» տոհմանունը։ Ահա այս Իվանե Օրբելին պիտի լինի Օրբելի—Օրբելյան տան հիմնադիրը։

Ինչպես երևում է, Բաղուաշի-Լիպարիտյանները վերանալով Թրիալեթում, Արգվեթում շարունակում են ծաղ, հանձին նրանց մի ճյուղի, որը XII—XIII դ. դ. հայտնի ֆեոդալական տուն էր «Կախաբերիձե» անունով հայտնված։ Սրանք շարունակում են կրել իրենց նախորդների տոհմական անունները։ Սրանց անվան հետ կապված հուշարձանները գտնվում են Արգվեթի Մղվիմևվի գյուղում։ Կախաբերիձե տոհմի պատմությունը, որ ինքնուրույն հետաքրքրական խնդիր է, դուրս է գալիս, սակայն, մեր կողմից առաջադրված հարցի սահմաններից։

Ստորև բերում ենք Բաղուաշի-Լիպարիտյան տան տոհմածառը։

Լիպարիտ I Բաղուաշի

Երիսթավ Արգվեթի, նստացն է Կացխի գյուղը։ 880 թ. թ. տիրում է նաև Թրիալեթ (Թռեղք) գավառին և իր կենտրոնն է դարձնում Կլդեկարի ամրոցը, Կացխին ծառում է իբրև տոհմական գերեզմանատուն

Ռատ I

Երիսթավ Թրիալեթի և Արգվեթի. 989 թվից իշխում է միայն Արգվեթում և իշխանանիստն է Կացխի գյուղը։

Լիպարիտ II «Մեծ» Երիսթավ Արգվեթի—Ցխովրեբայ (հուն. [illegible]

Ռատ II
Դիդեբուլ Երիսթավ Արգվեթի, սպանվում է Շիրիմքի ճակատամարտում 1021 թ.

Զվիադ (Իվանե)
(1021—1025) Երիսթավաց Երիսթավ Արգվեթի և Թրիալեթի. իշխանանիստն է Կլդեկարի գյուղը։

Լիպարիտ III Մեծ
Երիսթավաց Երիսթավ և ամիրսպասալար (1026—1058) 1058—1064 թ. թ. կուսակրոն «Անտոնի» անունով։

Դուստր: Վերոնիկա որդին I. Զորտուանելի
Սպանվում է 1048 թ. Բասենի ճակատամարտում։

Ռատ-(«Դանիշմանդ»?)
Իշխում է Փոքր Հայքում (1071—1084)։

Իվանե
Երիսթավաց Երիսթավ (1059—1074)։

Նիանիայ
Մահանում է Անիում։

Լիպարիտ IV
Երիսթավաց-Երիսթավ, 1082 թ. ընդունում է մահմեդականություն և տանում է «ամիրա» տիտղոսը (1074-1095)։

Ռատ III
Երիսթավաց-Երիսթավ (1097—1103)

Անժառանգ Ռատ III-ի կալվածքները Դավիթ II Շինողը գրավեց հարքունիս։